բլած է, մախուան ճառագայթ մը որ անկարելի պիտի դարձնէ որ եւ է պատերազմ։ Ցիսուն միլիոն վոլթ ուժով, այս ճառագայթը պիտի կրնայ խորտակել տասը հազար օդանաւեր, բաղկացած տորմիղ մը, աւելի քան 400 քիլոմեթր հեռաւորութեամբ եւ վայրկենապէս ոչնչացնել բանակ մը միլիոններ բանակներ։

Այս ճառագայթը պիտի կրնայ գործածուիլ միայն պաշտպանութեան համար, որովհետեւ պիտի արձակուի ծայր աստիճան զօրաւոր ելեկտրական ոյժէ, որոնք պիտի հաստատուին սահմանի կէտերու վրայ եւ չինական պատնէշի մը պէս պիտի շրջապատեն խլամանչիլ երկիր։ Այս միեւնոյն գիւտին շնորհիւ, կարելի պիտի ըլլայ փոքր կազմածներ տեղաւորել մարտանաւերու մէջ, ոչնչացնելու համար օդանաւերը։

Գիտնականը կը խորհի գիտնականութեան խորհրդաժողովին ներկայացնել իր գիւտը։

## Ամէն օր կծիկ մը եւս կը քակուի

Սթավիսքիի քննիչ յանձնաժողովը յուզումնալից նիստ մը ունեցաւ անցեալ օր։ Արդարադատական երեսփոխան Ֆիլիփ Անրիօ, որ վեց ամիսէ ի վեր պայքար կը մղէ նախկին վարչապետ Պ. Շոթանի դէմ, կրկին մեղադրեց զինքը, Հասատանց թէ անոր եղբայրը, Փիէռ Շոթան, տուն — տեղ եղած էր նախկին ...

[Remaining italic paragraph:] Այս անգամ ցոյց տուաւ Փիէռ Շոթանի մէկ նամակը, որ ժամանակին կուտար Փարիզի խագարաններէն վառարուած մարդու մը համար եւ որուն պիտի ցուցնէր Արդարադատութեան Տեսչութեան մէկ փաստաթուղթը։ Այս յայտնութիւնը մեծ յուզում պատճառեց, մանաւանդ որ Պ. Անրիօ երկրորդ յայտնութիւն մը եւս բրաւ, պատմելով թէ Պ. Ռէմիյեօ, ներքին նախարար Պ. Սառոյի օգնականը, եւ Փէնէէ, Շոթանի օգնականը, փորձած էին գրամով ետ առնել նամակը։ Փէնէէ հերքեց ըլլալով, անմիջապէս ներս կանչուեցաւ Ռէմիյեօ որ հերքեց եղած վերագրումը եւ բսաւ թէ մէկը եկաւ եւ նամակին լուսանկարը ցուցուց իրեն։ Մերժեց յայտնել այցելուին անունը, յետոյ ներքը գրուելով անուն մը տուաւ, եւ յայտարարեց թէ չպիտի խօսի մինչեւ որ յանձնաժողովը չապահովէ պաշտպանել զինքը։

Որոշուեցաւ ուրիշ վկաներ ալ կանչել։

### ՖՐԱՆՍԱՅԻ ՇՐՋԱՆԸ ՀԵԾԵԼԱՆԻՒՈՎ

Ինչպէս գրած էինք հինգշաբթի օրուան «Ֆրանսայի շրջանը» հեծելանիւով մրցումը տեղի ունեցաւ շատ դժուարին պայմաններու մէջ եւ մեծ փոփոխութիւններ կրեց ընդհանուր դասաւորումը։ Այս հանգրուանը Գափ — Տինեը (227 քիլոմեթր, լեռնային) շահեցաւ Ֆրանսացի Վիէթթօ։ Վարսի եւ տ'Ալլոսի գագաթը հասնելուն պէս շահեցաւ ամբողջ ճամբու տեւողութեան գտնուած լեռներու առաջնութիւնը, այնպէս որ Տինեը հասաւ վեց վայրկեան 50 երկվայրկեան առաջ։ 1926ին անգամ մըն ալ Իտալացի Պոտէչիան էր որ այսպիսի անակնկալ մը բրաւ։ Իսկ օրուան երկու հակառակորդները, Մարթանօ — Մաներ, միշտ իրար հետապնդեցին, բայց ճամբան Մարթանոյի հեծելանիւը աւրուելով, Մաներ երկու վայրկեան 38 երկվայրկեան յառաջ անցաւ։ Մարթանոյի ընկերները, Ռէսթի եւ Կապուչանի քաջալերելով ճամբան շարունակեցին եւ Հասան Ալլոսի գագաթին վրայ, չուարեցնելով Մաներ։ Ասկէ վերջը միշտ իրար հետապնդելով, Մարթանօ Տինեը հասաւ 6րդ, իսկ Մաներ 10րդ։

Ընդհանուր դասաւորման մէջ ալ շատ մեծ փոփոխութիւններ եղան։ Իտալացի Մորէլլի գրաւեց Լափէպիի տեղը (երրորդ), Լափէպի անցաւ 5րդ, իսկ Վիէթթօ որ 13րդն էր, եղաւ 6րդ.

Երէկ ուրբաթ մրցողները պիտի կտրէին Տինեը — Նիս (156 քիլոմէթր) Ալպեան լեռներուն վերջին հանգրուանը։ Այսօր, շաբաթ դադար կ'ընեն Նիսի մէջ, սկսելու համար Պիրէնեան լեռներու մրցումը, որ մեծ դժուարութեանց պիտի մատնէ մրցորդները.

Հեծելանւորդներէն շատերը ճամբան խարդախութիւն գործած ըլլալով, տուգանքի դատապարտուեցան











## ՈՒՐԱԽԱՏԵՍՏ

ՍՈՐՖՕՅԻ Հայրենակց. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը ժողովը կը հրաւիրէ քաղաքի եւ արուարձաններու մէջ բնակող Սորֆայի եւ շրջանի բոլոր հայրենակիցները վաղը Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին Պ. Գէորգ Եօթնեղբայրեանի բնակարանը 31, Bld du Nord, La Rosière, Beaumont

Այս երկուշաբ. երեկոյ ժամը 9ին, Օր. Քառափեան կը նուագէ Debussy, Փարիզի Ռատիօ L. L.էն։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տիկին Աննա Վարպետեան եւ զաւակները՝ Զարուհի, Երջանիկ եւ Գրիգոր կը փնտռեն իրենց ամուսինը եւ հայրը, Միսաք վարպետեան, որ կորսնցուած էն 1922, Իզմիրի աղէտին։ Իր մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել Պ. Գրիգոր վարպետեանի 15, rue du Terrasse. Marseille։ Ծախքերը լուր տուողին նուէր։


Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13e)




## Փարիզ եւ գաւառներ

ԳԱՆԵԼՕ ՔԱՇԱՆԻ «Արծիւ» ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը այսօր շաբաթ երեկոյ ժամը 9ին Քաշանի ծանօթ հաւաքատեղին։ Շարունակութիւն նախորդ ժողովի։

### Գաւառ

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը այսօր Շաբաթ երեկոյ ժամը 9ին սովորական հաւաքատեղին։ Օրակարգ՝ շարունակութիւն նախորդ ժողովի։

ՎԱԼԱՆՍԻ «Քրիստափոր» ենթակոմիտէի ժողովը տեղի կ'ունենայ այսօր Կիրակի երեկոյ ժամը 8ին սովորական հաւաքատեղին։

ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները վաղը Կիրակի առաւօտ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին։ Օրակարգ շարունակութիւն նախորդ ժողովի օրակարգի։

ՓԱՐԻԶԻ «ԵԳԻՊՏՍԻ» ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերները այս երեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին 32, Avenue des Gobelins սրճարանի վերնայարկը։

Օրակարգ՝ Շրջանային ժողովի օրակարգերու քննութիւն։

